ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԾԶ.

# ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

## ՆՈՐԱԳԻՒՏ ՄՆԱՑՈՐԴԱՑ ԳՐՈՑ ՄԷՋ

---

ԳՐԵՑ

ՀՐԱՉԵԱՅ ԱՃԱՌԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1908.

# ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

## ՆՈՐԱԳԻՒՏ ՄՆԱՑՈՐԴԱՑ ԳՐՈՑ ՄԷՋ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԾԶ.

# ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

## ՆՈՐԱԳԻՒՏ ՄՆԱՑՈՐԴԱՑ ԳՐՈՑ ՄԷՋ




ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1908.

# ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

## ՆՈՐԱԳԻՒՏ ՄՆԱՑՈՐԴԱՑ ԳՐՈՑ ՄԷՋ

---

ԳՐԵՑ

ՀՐԱՉԵԱՅ ԱՃԱՌԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1908.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

—

Նորագիւտ Մնացորդաց Գիրքը հրատարակուեցաւ 1899 թուին Մոսկուա՝ Ուսուցչապետ Գրիգոր Խալաթեանցի ձեռքով: Ինչպէս հրատարակիչը կը նկատէ յառաջաբանին մէջ՝ այս գիրքը հայ գրականութեան ամենահին երախայրիքն է. սակայն հակառակ իւր այս մեծ արժանիքին՝ մինչեւ այսօր պատշաճաւոր քննութեան արժանի չեղաւ այն՝ թէ՛ լեզուի եւ թէ բանասիրական տեսակէտով: Որքան կը յիշեմ՝ Բազմավէպի մէջ միայն հրատարակուեցաւ քանի մը էջ գրախօսական (տես 1900, էջ 117 – 122, Հ. Ք. Չրաքեանի յօդուածը՝ “Գիրք Մնացորդաց ըստ հնագոյն հայ թարգմանութեան„): Երկրորդը պիտի ըլլայ յաջորդ գրուածքս (լոյս տեսած նախապէս Հանդէս Ամսօրեայի մէջ, 1908, էջ 193—202), որուն նիւթը լոկ լեզուական է:

Նորագիւտ Մնացորդաց Գիրքը՝ իբրեւ ոսկեդարեան գործ, ճշմարիտ Մեսրոբեան

լեզուի տիպար մ՚է. Հոն կը գտնենք նոյն դպրոցին վերաբերեալ բազմաթիւ բառեր, ոճեր ու դարձուածներ, որոնք շատ անգամ այլուստ եւս ծանօթ էին մեզ: Սակայն գրուածքը կը պարունակէ նաեւ երեսունէ աւելի բոլորովին նոր հայերէն բառեր, որոնք մեր գրականութեան զանազան մնացորդներուն մէջ մուտք գործած չեն: Հաւաքել այս բառերը, ճշդել անոնց նշանակութիւնը, տալ որքան կարելի էր անոնց ստուգաբանօրէն մեկնութիւնը, ահա գործիս համեստ նպատակը:

Աշխատութիւնս հետեւեալ ձեւով կազմուած է: Նախ՝ առանձին թուահամարով կը դնեմ նորագիւտ բառը՝ գործածուած տեղը նշանակելով. այնուհետեւ մէջ կը բերեմ նոյն բառին վկայութիւնը՝ ըստ Նորագիւտին (առաջին սիւնակ). ասոր դէմ կը դնեմ Եբրայական բնագիրը (երկրորդ սիւնակ): Որովհետեւ Եբրայական բնագիրը եբրայեցերէն լեզուով դնել անյարմար էր, ուստի հարկ համարեցի նոյնը թարգմանել գրաբարի, ըստ կարի հետեւելով Նորագիւտին կամ Եօթանասնից, որպէս զի երկրորդական տարբերութիւնները չխանգարեն առաջարկուած բառին համեմատու-

*թիւնը։ Թարգմանութեանս համար օգնութեան առի Ռիխարդի եբրայեցերէն եւ ռուսերէն համեմատական հրատարակութիւնը (Վիեննա 1877) եւ Բողոքականներու աշխարհաբար թարգմանութիւնը (Պոլիս 1857)։ Երկու համեմատական սիւնակներուն տակ կը դնեմ Եօթանասնից հայ թարգմանութիւնը՝ ըստ Զօհրապեան հրատարակութեան. ասոր ալ կը հետեւին իմ նկատողութիւններս։*

*Նորագիւտ բառերէս եօթնի մասին յիշած են նաեւ Խալաթեան (Ցառաչաբան՝ էջ Թ—Ժ) եւ Չրաքեան՝ Բազմավէպի նոյն յօդուածին մէջ։*

*Նոր-Նախիջեւան 1908 ապրիլ 20։*

*ՀՐԱՉԵԱՅ ԱՃԱՌԵԱՆ*

# ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

## ՆԱԽԱԳԻԻՏ ՄՆԱՑՈՐԴԱՑ ԳՐՈՑ ՄԷՋ

---

### 1. Անխամ. Ա Մն. ԻԳ. 29:

*Եւ ի վերայ հացին, որ առաջի դնեն, եւ ի վերայ նաշհին պատարագացն, եւ ի վերայ յանխմորն մանզառայն, եւ ի վերայ խմեալ տապակելոցն:*

*Եւ ի վերայ հացին առաջաւորութեան, եւ ի վերայ նաշհոյ հացի պատարագին, եւ ի վերայ անխմոր նշխարաց, եւ ի վերայ տապակին եւ զանգելոցն եւ ի վերայ ամենայն չափուց վերակացութեան:*

...Հացին առաջադրութեան եւ ի վերայ նաշհւոյ պատարագացն եւ քաքարացն, բաղարջացն եւ տապակին եւ զանգելոցն իւղով եւ յամենայն չափսն:

Եբրայականին մէջ անխամ բառին դէմ դրուած է անխմոր, որ կը համապատասխանէ եօթանասնից բաղարջոյն ձեւին, թէեւ ասիկա տեղափոխուած է։ Ըստ այսմ անխամ նորագիւտ բառը կը նշանակէ "անխմոր„։ Քիչ մը վարը ունինք խմեալ, որ կը պակսի միւսներուն մէջ, բայց երբ հականիշ դրուած ըլլալէն կը հետեւի թէ կը նշանակէ "խմորեալ„։

Անխամ եւ խմեալ ձեւերը երեւան կը հանեն խամ արմատ մը, որմէ կազմուած է խմոր.

-ուր մասնիկին համար հմմտ. հատ-ուր, բէհ-ուր, գլ-ուր-ել եւն։ Հիւպշ. քեր. 305 հայ. խմոր բառը դրած է Ասոր. xəmīrā ձեւէն փոխառեալ, բայց կ՚աւելցնէ թէ ասորիին դէմ սպասելի էր հայ. *խմիր կամ *խամիր. Հայուն ո ձայնը մեկնելու համար M. Bittner WZKM 13, թ. 3 ենթադրած է թէ հայ. խմոր փոխառեալ է թրք. xamur ձեւէն! ասոր անկարելիութիւնը ցոյց տուած արդէն R. Gauthiot, Բանասէր 1899, 325։

Վերի մեկնութեամբ խմոր բառը կազմուած է հայ հողի վրայ եւ կապ չունի ասոր. xəmïrā կամ թրք. xamur ձեւերուն հետ, որոնք ընդհակառակը կարող են հայէն փոխ առնուած ըլլալ։ խամ "խմոր" արմատը ըստ իս տարբեր չէ խամ, խմել "ծծել, ներս ծծել" ոսկեդարեան ձեւէն։

## 2. Անոփնեայ. Բ Մն. Թ. 18։

Եւ արար արքայ զաթոռն փղոսկրեայ եւ պատեաց զնա ոսկւով քաշաւ. եւ վեց աստիճան աթոռոյն ոսկւով պատեալ. եւ ռանոտնիա մի ոսկի՝ աթոռոյն եւ բազուկք աթոռոյն աստի անտի ոսկիք եւ երկու առիւծք աստի անտի բազկացն:

Եւ արար արքայ աթոռ մեծ փղոսկրեայ եւ պատեաց զնա ոսկւով քաշաւ, եւ վեց աստիճանք էին աթոռոյն եւ պատոռաանդուա մի ոսկի՝ կից աթոռոյն եւ բազուկք աստի եւ անտի յաթոռն նստելոյ եւ երկու առիւծք աստի անտի բազկացն:

Եւ արար արքայ աթոռ ի ժանեաց փղաց մեծ եւ պատեաց զնա մաքուր ոսկւով. եւ վեց աստիճանք էին աթոռոյն կապեալք ոսկւով. եւ անկիւնք աստի եւ անտի յաթոռն նստելոյ, եւ երկու առիւծք կային առ ոտս անկեանցն։

"Եւ անոտնիա մի ոսկի աթոռոյն" կը պակսի եօթանասնից, ինչպէս նաեւ Նորագիւտին երկու ձեռագիրներէն մէկուն մէջ. բայց բարեբախտաբար երբրայեցին համապատասխան տեղն ունի "պատուանդան", որով կը ճշդուի անոտնեայ բառին նշանակութիւնը։ Ասիկա անշուշտ կազմուած է ոտն բառէն եւ չկրնար զատուիլ անոտք բառէն. (անոտք կը նշանակէ "ոտքին՝ վարի կողմը, սնարին հակառակը". Հմմտ. մին ի սնարից եւ միւսն յանոտից)։

### 3. Արդեւլ. Բ Մն. ԼԴ. 11։

| | |
|---|---|
| Եւ զնեսցեն վէմս տադեալս չորեքկուսիս եւ փայտս ի հեծանոցուս: | ...զի գնեսցեն վէմս տաշեալս եւ փայտս ի գերանս: |

...գնել (ուղղէ գնել) քարինս չորեքանկիւնիս մեծս, եւ փայտս ի գերանս...։

Արդեւլ երբրայականին "տաշեալ, տաշուած" ձեւն է։ Նոր Հայկ. Բառ. գիտէ արդեւլ "յարդարել, կոկել" Փիլոնի վկայութեամբ։ Նորագիւտ օրինակէս կ'երեւայ որ բառը ոսկեդարեան ձեւ մ'է։

### 4. Բերանապարիշտ. Բ Մն. Թ. 4։

| | |
|---|---|
| Եւ զծախս սեղանոցն, եւ զաթոռս մանկանց իւրոց, եւ զկարգս պաշտամանն նորա, զհանդերձ պատմուճանի նորա, եւ զբերանապարիշտսն եւ զհանդերձ իւրեանց...: | Եւ զկերակուրս սեղանոյ նորա, եւ զբնակարանս ծառայից նորա, եւ զկարգ սպասաւորաց նորա, եւ զհանդերձս նոցա, եւ զմատռուակս նորա եւ զհանդերձս նոցա: |

Եւ զկերակուրս սեղանոյն. եւ զաթոռս ծառայից նորա, եւ զկարգս պաշտօնէից նորա, եւ

զպատմուճանս նոցա, եւ [illegible] նորա եւ զզգեստն նոցա:

Թերանոտորէնը կը նշանակէ ուրեմն "մատռուակ": Այս բառը կազմուած է թերան եւ պորշտել (Հին *պորշտել) բառերէն. Հմմտ. թորէտորէնը "բարեպաշտ", կոտորէնը "կռապաշտ", ամբորէնը իբր ան-տորէնը "անպաշտ", զրտոտորէնը "զրապաշտ": Պորշտել բառին հին նշանակութիւնը եղած է "ծառայել, սպասաւորել". եւ աստ աւելի հին մէկ առումն է "գինի լցնել, մատռուակել". Հմմտ. Աւետարանի ծանօթ հատուածը. "ամենայն մարդ զանոյշ գինին յառաջագոյն պաշտէ": Թերանոտորէնը կը պահէ յիշեալ հնագոյն առումը:

## 5. Դոհանաչէայ. Ա Մն. ԻԹ. 2:

*Բայց ես յամենայն զօրութենէ իմմէ պատրաստեցի նիւթ՝ տան Աստուծոյ իմոյ, զոսկի յոսկւոյ տեղ, եւ զարծաթ յարծաթոյ տեղ, եւ զպղինձ ի պղնձոյ, զերկաթ յերկաթոյ տեղ, եւ զփայտ ի փայտի տեղ, եւ քարինս լրի, եւ ականս պատուականս ազգիս ազգիս, եւ զամենայն ակն պատուական եւ վէմս դաճամեակաց:*

*Եւ ես յամենայն զօրութենէ իմմէ պատրաստեցի վասն տան Աստուծոյ իմոյ, զոսկի յոսկւոյ տեղ եւ զարծաթ յարծաթոյ տեղ, եւ զպղինձ ի պղնձոյ, եւ զերկաթ յերկաթոյ տեղ, եւ զփայտ ի փայտի տեղ, եղնգնաքարինս եւ (քարինս) ագուցանելոյ, եւ ականս զարդուց ազգիս ազգիս եւ զամենայն ակն պատուական եւ վէմս մարմարեայս բազում:*

Ըստ ամենայն զօրութեան իմոյ պատրաստեցի նիւթս տանն Աստուծոյ իմոյ. ոսկի եւ արծաթ, պղինձ եւ երկաթ, փայտս եւ քարինս անկեանց եւ

կամարաց, եւ քարինս ընտիրս, եւ ականս պատուականս, եւ այլ պատրաստութիւն բազում։

Դահանակեայ ձեւը թէեւ նոր է, բայց ունինք դահանակ «կանաչ ու դեղին ազնիւ քար մը», Ծն. Բ 12, Տոբ. ԺԳ. 22 եւն։ Հոս հետաքրքիր է բառին «մարմարիոն» նշանակութիւնը։

## 6. Երկուցեալ. Բ Մն. ԻԱ. 19։

Եղեւ աւուրց յաւուրս, եւ իբրեւ ելն ժամանակ նորա յաւուրցն երկոռցեալ թափեցաւ աղիքն որովայնին հանդերձ եւ մեռաւ նա յախտ չարչարանաց իւրոց:

Եւ յետ աւուրց, իբրեւ ելն էանց ժամանակ երկուց ամաց, թափեցան աղիքն յախտէ անտի եւ մեռաւ նա յախտ չարաչար:

Եւ եղեւ աւուրց յաւուրս. իբրեւ ելին ժամանակ աւուրցն նորա, յերկուս աւուրս ել որովայն նորա հանդերձ ախտիւն, եւ մեռաւ ի չար հիւանդութեանն յայնմիկ։

Առաջին համեմատութեամբ Երկուցեալ ձեւը պատռելու իմաստ մը կը թուի ընծայել. բայց թէ միւսներուն համեմատութիւնը եւ թէ մանաւանդ ձեռագրին վիճակը (ըստ ձեռագրին Երկուցեալ բառին վրայ կայ ջնջիչ նշան) կը ցուցնեն թէ սխալ գրչութիւն մ'է այն։ Խալաթեան կ'ուղղէ աւուրց երկուց, առանց եալ վերջաւորութեան վրայ խօսելու։ Այս եալ-ը, ինչպէս եւ եօթանասնից «յերկուս աւուրս ել» ձեւը կը ցուցնեն թէ նորագիւտին այս սխալ գրչութիւնը պէտք է սրբագրել յաւուրցն երկուց ելեալ նախե-ցաւ . . .։

### 7. Զառիվերակ. Բ Մն. ի. 16:

"Վաղիւ իջիք դուք ի վերայ նոցա եւ ահա ելանիցեն նոքա ընդ զառիվերն Սարակին Աթշիշ": Եօթանասնիցն ունի "վաղիւ իջէք ի վերայ նոցա. ահա իջանեն ընդ զառիվայրն Ասեր": Զառիվերակ ձեւը ծանօթ է Հայկ. բառարանին, միայն մէկ վկայութեամբ. "ելանէր նա ընդ զառիվերակն ի Բեթէլ" Եփր. Թգ.: Նորագիւտը կու տայ ասոր երկրորդ օրինակը՝ ոսկեդարեան հեղինակաւոր ձայնով:

### 8. Զղծեալ. Բ Մն. իէ. 2:

Եւ գնայր Յովաթամ ուղղութեամբ առաջի Տեառն ըստ ամենայն գործոցն Ոզիայ հօր նորա, բայց միայն ի տաճար անդր Տեառն ոչ եմուտ. եւ տակաւին ժողովուրդքն զղծեալ էին:

Եւ արար ուղղութիւն առաջի Տեառն ըստ ամենայնի զոր ինչ արար Ոզիա հայր իւր. բայց ոչ եմուտ ի տաճարն Տեառն. եւ տակաւին եւս ժողովուրդն ապականեալ էր:

Եւ արար ուղղութիւն առաջի Տեառն՝ ըստ ամենայնի զոր ինչ արար Ոզիաս հայրն նորա. բայց ոչ եմուտ ի տաճարն Տեառն. եւ տակաւին եւս ժողովուրդն ապականեալ էր:

Համեմատութենէն կ'երեւայ որ զղծեալ բառին նշանակութիւնն է "ապականեալ". Չրաքեան (Բազմ. 1900, էջ 122) կ'աւելցնէ երկու վկայութիւն եւս. զղծեալ օգ+ Ոսկ. մեկ. իսկ Հին բռ. զղծեալ "տրտմեալ". վերջինը անշուշտ սխալ է: Զղծեալ, ինչպէս Խալաթեան եւս կը նկատէ (էջ Ժ), կու գայ ղծ "ցեխ" արմատէն. ասկէ ունինք նաեւ ղծեալ "աղտոտ, մութ", ղծո—

ընեն "մժութիւն, թխութիւն": Ջմեռն սաստ-կական ձեւն է։

## 9. Ղեւ. Ա ՄՆ. ԻԹ. 2։

Բառիս գործածութիւնը տեսնուեցաւ վերը՝ թիւ 5 հատուածին մէջ։ Դժբախտաբար համե-մատելի հատուածը պակասաւոր է, որով Լէւ բառին ճիշտ համապատասխանը դժուար է գըտ-նել։ Նորագիւտին Եւ թուղթն. Լէւ ձեւին դէմ Եբրայականն ունի "Եղնգնաքարինս եւ (քարինս) ագուցանելոյ", իսկ Եօթանասնիցը "քարինս ան-կեանց եւ կամարաց"։ Առաջինին մէջ Լէւ պէտք է որ համապատասխանէ կամ "եղնգնաքար" եւ կամ "քարինս ագուցանելոյ, գամելու քար" ձեւին, իսկ երկրորդին մէջ "քար անկեան եւ կամարաց"։ Ըստ այսմ Լէւ յիշեալ երեք նշանա-կութեանց վրայ կը տատանի եւ ճշտիւ չենք կրնար որոշել թէ այս երեքէն ո՞րն է արդեօք անոր ճիշտ նշանակութիւնը։ Գաւառականներուն մէջ ունինք Լէնկ "դրանը մէկ կողմը փողոցին մէջ հաստատուած քարէ կամ փայտէ նստարան. 2. մայթ, սալայատակ", որ կարծես երրորդ նշանակութեան համապատասխան կը թուի։ Իսկ եթէ Լէւ սեռական ձեւ մըն է, աւելի յարմար է դնել "քարինս ագուցանելոյ, կապիճին մէջ գա-մելու քար, տճկ. մըխլայըճը ճաշը"։

## 10. Խաշնոբեւ. Բ ՄՆ. ԺԳ. 15։

Ցափշտակէին զքաղաքս Եւ առին աւար զամենայն նոցա, զի բազում աւար քաղաքս նոցա. զի բազում կայր ի նոսա, որ եկն ի աւար կայր ի նոսա: Եւ

ծեռն նոցա: Եւ քանակս արին խուշնտեուսց եւ անդ հարին կոտորեցին զամաղոնսն:

զվրանս հարին հօտից (մնացածը չկայ):

Եւ առին աւար զամենայն քաղաքս նոցա, քանզի աւար բազում եղեւ նոցա. այլ եւ զվրանս անասնոցն նոցա առին։ Եւ զմիասատինան կոտորեցին։

Թէեւ խոշնդրեւ բառին համապատասխանը Իբրայականին մէջ "հօտ", իսկ Եօթանասնից մէջ "անասուն" է, բայց անշուշտ ասոնք ճիշտ համազօրներ չեն։ Բառին ստուգաբանութիւնը պարզ կերպով կը ցուցնէ թէ խոշնդրեւ կը նշանակէ "խաշանց վերակացու, հովիւ". Հմմտ. ոնդրեւ։

## 11. Խմբալ։

Ասոր վրայ տես վերը անխառն։

## 12. Խոստացար. Ա Մն. ԻԹ. 4։

...երիս հազարս քանքարս ոսկի ի Սափէրայ եւ եւթն հազար քանքար արծաթոյ սրբոյ, զի օծցես նովաւ զորմս տաճարին, ի վերայ ոսկւոյն ոսկւով եւ ի վերայ արծաթոյն արծաթով, եւ յամենայն գործ ծեռին ճարտարապետաց: Արդ, եթէ իցէ որ յօժար խոստանորս բերել այսօր, լցցէ զձեռս իւր Տեառն Աստուծոյ:

...երիս հազարս քանքարս ոսկի, յոսկւոյ Ովփիրայ եւ եւթն հազար քանքար արծաթոյ սրբոյ, զի օծցեն նովաւ զորմս տաճարին, ի վերայ ոսկւոյն ոսկւով եւ ի վերայ արծաթոյն արծաթով, եւ յամենայն գործ ձեռին ճարտարապետաց: Արդ, ո՞վ իցէ յօժար ձեռնէրս բերել այսօր վասն Տեառն:

Երիս հազարս տաղանդս ոսկի ի Սոփիրայ, եւ եւթն հազար տաղանդ ընտիր արծաթ, օծանել նոքօք զորմս տաճարին ի ձեռն արուեստաւորաց։

Եւ որ ոք յօժարիցէ մտօք լնուլ զձեռս իւր այսօր Տեառն:

Գեղեցիկ ոսկեդարեան բառ մըն է խոստաւոր, որ Եբրայականին մէջ գրուած է "նուէր, ընծայ", Յօթանասնից մէջ չկայ այս բառը, բայց կը թուի թէ մտօք ձեւը ուղղելու է տրօք. (երկաթագիր գրութեան մէջ ՏՐՕՒՔ եւ ՄՏՕՒՔ խիստ չնչին տարբերութիւն միայն ունին): Ըստ այսմ խոստաւոր կը նշանակէ "ուխտական նուէր, բարի գործի մը համար ի նպաստ տրուած գումարը", եւ կը ծագի անշուշտ խոստանալ բառէն:

### 13. Ծխնի-ճխնի:

Երկաթ յոյժ ի բեւեռս դրանցն, ի գամս յօդիցն եւ ի կրկունս ծխնեացն (Ա Մն. ԻԲ. 3): Հոս ձեռագիր մը ունի ճխնեացն: Ասիկա խանգարեալ ձեւ մը չէ, այլ կը համեմատի Ոզմեցոց ենթաբարբառին ջխան "ծխնի" ձեւին հետ:

### 14. Կամախէ. Բ Մն. ԻԱ. 19:

Եւ մեռաւ նա յախտ չարչարանաց իւրոց: Եւ ոչ արարին նմա այնուհետեւ ժողովուրդն լալիս եւ կամախիճ, եւ ոչ հուր այրեցին նմա[1] հարցն իւրեանց:

Եւ մեռաւ նա յախտ չարաչար: Եւ ոչ հուր այրեցին նմա ժողովուրդն որպէս ի վերայ հարց նորա:

---

1 "Եւ ոչ հուր այրեցին նմա հարցն իւրեանց" անիմաստ կազմութիւն ունի. ըստ իս նմա ուղղելի է նման, որով իմաստը կը պարզուի եւ միւս կողմէ կ'ունենանք Եբրայականին [illegible] եւ Յօթանասնից [illegible] բառերուն համապատասխանը: Կրնայ ուղղուիլ նաեւ "եւ ոչ հուր այրեցին նմա՝ նման հարցն իւրեանց":

Եւ մնաց ի չար հիւանդութեանն յայնմիկ. եւ ոչ արար նմա ժողովուրդն յուղարկութիւն, իբրեւ զյուղարկութիւն հարցն նորա։

Նորագիւտ կամախի-ն բառը երկրորդ ձեռագրին մէջ աւանդուած է կմախի-ս ձեւով. եւ ինձ այնպէս կը թուի թէ առաջինն ալ ուղղելու է կմախի։ Համապատասխան նախադասութիւնը չկայ Եբրայականին մէջ, բայց բարեբախտաբար խօսքին կազմէն պարզ կերպով կ'երեւայ որ կամախի կամ կմախի (յգ. կամախիք կամ կմախիք) կը նշանակէ «մեռելի յուղարկաւորութիւն», ինչպէս ունինք նաեւ Եօթանասնից օրինակին մէջ։

Կամախի կամ կմախի շատ կարեւոր բառ մ'է ստուգաբանական տեսակէտով։ Ասիկա անշուշտ կմախ-ք բառին մէկ ուրիշ ձեւն է։ Brockelmann ZAss. 13, 327 (հմմտ. Հայ Թրգմ. ՀԱ. 1899, 286) վերջինս փոխառութիւն կը դնէ ասորեստանեան kimaḥḥu «դագաղ» բառէն եւ այս իմաստէն մերինին անցնելու համար ի նկատի կ'առնու Ասորաբաբելական թաղման սովորութիւնը։ Նորագիւտ կմախիք «յուղարկաւորութիւն» ձեւը փաստ մը աւելի կու տայ այս մեկնութեան, կազմելով երկու նշանակութեանց միջին օղակը։

Հին Հայկ. բառ. գիտէ կամախ (ի հոլովմամբ) «պատարագ, ընծայ, նուէր» ձեւ մը. ասիկա գուցէ մեր կամախի բառն ըլլայ, նշանակութիւնը սխալ հասկցուած։ Իսկ Նոր Հայկ. բառ. գիտէ կմախիք Ճառելոյ՝ միայն հետեւեալ վկայութեան մէջ. «Ոռնան եւ ողբան եւ գուժեն իբրեւ

կմախիս մեռելոց.„ Թղթ. Բարուք.: Հոս ի Հարկէ նմանի+ ճիշտ նոյն նշանակութիւնն ունի ինչ որ վերը. յունարէնն ունի մերձաւոր իմաստով ἐν περιδείπνῳ "ի ճաշ մեռելոյ„: Հայկ. բառ. ծանօթ չլինելով նմանի+ կամ նմանի+ "յուղարկաւորութիւն„ բառին, կը կարծէ թէ թարգմանիչը սխալ կարդացած ըլլայ յունարէնը (իբր περιδείδων "ահաբեկ„), որով թարգմաներ է նմանի+՝ իբր "կմախ եղեալ ի խրտուիլակ„:

## 15. Կծէտարած. Բ Մն. Է. 3:

"Եւ անկանէին ամենայն ժողովուրդքն յերկիր ի վերայ երեսաց իւրեանց, ի վերայ կծէտարած տալայարկ յատակոյն, երկիր պագանէին եւ օրհնէին զԱստուած„: Եօթանասնից օրինակն ունի նոյն տեղը "եւ անկան ի վերայ երեսաց յերկիր ի +արայատակ տեղւոյն, եւ երկիր պագին եւ օրհնեցին զՏէր„: Նորագիւտին "կծէտարած տալայարկ յատակոյն„ գեղեցիկ շարքին դէմ՝ երկրորդը ունի միայն "ի քարայատակ տեղւոյն„: Նոր բառ է կծէտարած "վրան մարմար քաշած, մարմարիոնով սալայատակած„: Միւս ձեռագիրն ունի կծատարած. ձեւին համար հմմտ. կծէայարկ Անան. եկեղ.:

## 16. Կայտ. Բ Մն. Թ. 25:

*Ու էին Սողոմոնի քառասուն հազար մատակ ձի կռուոի եւ երիւարք կառաց երկոտասան հազար:*

*Ու էին Սողոմոնի չորեք հազար ախոռք ձիոց եւ կառաց եւ երկոտասան հազար այրուձի:*

Եւ էին Սողոմոնի չորք բեւրք մատակ ձիք ի կառս, եւ երկոտասան հազար երիվարք:

Որովհետեւ երեք հատուածները շատ կը տարբերին իրարմէ, ուստի դժուար է ստուգել կուտի ձեւին նշանակութիւնը: Ըստ իս ասիկա կոյտ բառին սեռականն է եւ կը նշանակէ "ձիերու ջոկ կամ երամակ": Նոր Հայկ. բառ. կը յիշէ կոյտ այս իմաստով եւ վկայութիւն կը բերէ Խոսրովէն, Փիլոնէն ու Կալիսթենեսէն: Նորագիւտ ձեւը կը ցուցնէ թէ բառը ոսկեդարեան է:

### 17. Հանելք:

Ասոր վրայ տես վարը թիւ 19:

### 18. Հեծանոցս. Բ Մն. ԼԴ. 11:

Ասոր վկայութիւնը տես վերը թիւ 3: Թէ՛ Եբրայականին եւ թէ Եօթանասնից մէջ համապատասխանն է "ի գերանս". ասկէ կը հետեւի թէ հեծանոցս (ուղղելի գուցէ հեծանոցս) կը նշանակէ "գերան շինելու յարմար, գերանցու" եւ կը ծագի հեծան "գերան" ոսկեդարեան բառէն:

### 19. Հրաւանդ. Բ Մն. Դ. 16:

Եւ զհրաւանդսն եւ զհանելիսն եւ զկաթսայսն եւ զմսահանսն եւ զամենայն զկահ եւ զկարասի եւ զգործի, զոր առնէր Խիրամ:

Եւ զկաթսայսն եւ զթիս եւ զմսահանսն եւ զամենայն գործիս նոցա արար Քիրամ:

Եւ զկասկարայս եւ զբառնալիս եւ զսանսն եւ զմսահանսն եւ զամենայն կահ նոցա, զոր արար Քիրամ:

Համեմատելի բառերը չորս են, հրաւանդ, հանելք, կաթսայ եւ մսահան: Ասոնցմէ վերջինը (մսա-

հան "պատառաքաղ") նոյն է երեքին մէջ ալ. կոճառայ կայ Եբրայականին մէջ, բայց տեղափոխուած է. Եօթանասնից Թարգմանութեան մէջ դարձած է սան (հոմանիշ), բայց իր տեղը փոխած չէ: Կը մնան երկու անծանօթները՝ Հրաւանդ եւ հանելի, որոնց դէմ Եբրայականը ունի միայն մէ, իսկ Եօթանասնիցը կը դնէ կոչնակ եւ բանալիք ձեւերը: Եբրայականը բառերու թէ՛ շարքը եւ թէ թիւը փոփոխած ըլլալով՝ ճշտիւ համեմատելի չէ նորագիւտին հետ, մինչդեռ Եօթանասնիցը երկու տեսակէտով ալ համաձայն է, ուստի դժուար չէ գուշակել թէ Հրաւանդ պիտի նշանակէ "կոչնակ", իսկ հանելիք "բանալիք": Այս բանը կը հաստատէ նաեւ բառերուն ստուգաբանութիւնը. հանել եւ բանալ հոմանիշներ են, ուստի հանելիք եւ բանալիք ալ հոմանիշներ ըլլալու են: Հրաւանդ կազմուած պիտի ըլլայ հուր եւ վանդ բառերէն. վերջինէն է նաեւ վանդով "կասկարայ" Եզ. Լ. 3, Լէ. 16. ուստի Հրաւանդ (իմա՛ հրավանդ) "կրակի վրայ բան խորովելու կասկարայ":

20. Մայրակոփ, մայրակոփեայ:

Ես բնակեալ եմ ի տաճարս մայրակոփեայս (Ա. Մն. ԺԷ. 1): Ընդէ՞ր ոչ շինէք դուք ինձ տաճարս մայրակոփս (Ա. Մն. ԺԷ. 7): Եօթանասնիցն ունի ասոնց դէմ ի մայր փայտից, իսկ եբրայականը եղեւնափայտեայ: Կազմուած են մայր բառէն կոփ-ել բայով, որ հետեւաբար կրնայ փայտեղէն իրերու համար գործածուիլ:

## 21. Մանգար։

1. Եւ ղնէր Դաւիթ մասունս մասունս ամենայն խորայելացի մարդոյ, յարանց մինչեւ ցկանայս, առայր քաքար մի եւ մանգառ մի եւ կտապ մի (Ա. Մն. ԺԶ 3):

Եւ բաշխեաց ամենայն խորայելացի մարդոյ, յարանց մինչեւ ցկանայս. առայր նկանակ մի հացի, պատառ մի մսոյ եւ կարկանդակ մի:

Եւ բաշխեաց ամենայն Իսրայելի յառնէ մինչեւ ցկին, ի մարդ՝ հաց մի ի հացարարոցէ, եւ պատառ մի ի կասկարայից։

2. Եւ ի վերայ հացին, որ առաջի դնեն, եւ ի վերայ նաշհին պատարագացն եւ ի վերայ յանխուսն մանգառան, եւ ի վերայ խմեալ տապակելոցն (Ա. Մն. ԻԳ. 29):

Եւ ի վերայ հացին առաջաւորութեան, եւ ի վերայ նաշհոյ հացի պատարագին եւ ի վերայ անխմոր նշխարաց եւ ի վերայ տապակին եւ զանգելոցն եւ ի վերայ ամենայն չափուց վերակացութեան:

Հացին առաջադրութեան եւ ի վերայ նաշհւոյ պատարագացն, եւ քաքարացն, բաղարջացն եւ տապակին եւ զանգելոցն իւղով եւ յամենայն չափան։

Բառին նշանակութիւնը ճշտել քիչ մը դժուար է։ Առաջին վկայութեան մէջ ունինք համեմատելի երեք բառ. փափար, մանգար, նփառ, որուն դէմ եբրայականն ունի "նկանակ մի հացի, պատառ մի մսոյ եւ կարկանդակ մի" (ככר־לחם ואשפר ואשישה). իսկ Եօթանասնիցը "հաց եւ պատառ մը միս" (կարկանդակը կը պակսի)։ Այսոց համեմատութենէն այնպէս կը հետեւի թէ մանգար կը նշանակէ "միս, պատառ մը միս"։

Սակայն այս նշանակութիւնը չի յարմարիր երկրորդին։ Հոս բարեբախտաբար մանդ ունի ածական մը անխառն, զոր մեկնեցինք "անխմոր, բաղարջ" եւ որ չկրնար յարմարիլ մսին։ Ուստի կը հետեւի թէ մանդ խմորեղէնի տեսակ մ'է եւ առաջին վկայութեան մէջ նախորդ ու յաջորդ բառերուն հետ հոմանիշներու շարք մը կը կազմէ (քաքար, մանգառ, կտապ), երկրորդին մէջ ալ իրօք որ Եբրայականը կը հանէ "անխմոր նշխար" ձեւը, որով մանդ "խմորեղէն" նշանակութիւնը հաստատութիւն կը գտնէ։

Երկու ձեռագիրներէն մէկը երկու պարագային ալ գրած է մանդա, զոր Խալաթեան կը մերժէ, որովհետեւ առաջին ձեռագիրը կը ներկայացնէ միշտ աւելի ընտիր գրչութիւն մը։

## 22. Մաշկ Ա Մն. Թ. 19։

*Եւ Սեղովմ... եւ եղբարք իւր... ի վերայ գործոց ծառայութեան, որ պահեն զդահլիճ մաշկին, եւ հարք իւրեանց ի բանակս Տեառն որ պահեն զմուտ մաշկին:*

*Եւ Շաղում... եւ եղբարք իւր... ի վերայ գործոց ծառայութեան, որ պահէին զսեամս խորանին եւ հարք իւրեանց ի բանակն Տեառն պահէին զդուռն:*

Եւ Սաղովմ... եւ եղբարք նորա... ի վերայ գործոց սպասուն, որք պահէին զպահպանութիւնս խորանին, ինքեանք եւ հարք իւրեանց ի բանակին Տեառն, եւ պահէին զմուտն։

Նորագիւտին մաշկ բառին դէմ թէ Եբրայականը եւ թէ Եօթանասնիցը կը դնեն "խորան, վրան". ասիկա անշուշտ նոր առում մ'է միայն. բառը չէր կրնար զատուիլ մաշկ "կաշի,

մորթ» ձեւէն. իսկ Նոր առման համար կրնայ համեմատուիլ վրաց. մուշկէ «երկար զգեստի քղանցք, վրանի ծածկոց»:

## 23. Մուղ Ա Մն. ԺԲ. 40:

Եւ կրէին իշովք, ուղտովք եւ ջորովք եւ մղաւք զկերակուրս ալեր եւ գինոյ եւ չամչոյ եւ պաղատիտս, ձէթ եւ զարջառ եւ զոչխար յոյժ:

Եւ բերէին իշովք եւ ուղտուք եւ ջորւովք եւ եզամբք զհաց, եւ ալիւր ի կերակուր, պաղատիտ եւ չամիչ եւ գինի եւ ձէթ եւ զարջառ եւ զոչխար յոյժ:

Եւ բերէին նոցա ուղտուք եւ իշովք եւ ջորւովք եւ եզամբք կերակուրս, ալեւր եւ թուզ, եւ չամիչ եւ գինի եւ ձէթ եւ զուարակս եւ ոչխարս բազումս:

Թէ Եբրայականին եւ թէ Եօթանասնից մէջ մուղ բառին համապատասխանն է «եզ». բայց կը թուի թէ մուղ այս իմաստով չէ, այլ կը նշանակէ պարզապէս «գրաստ» կամ լաւ եւս «ձի» (չկրնար ըլլալ իբր լատ. mulus «ջորի», որովհետեւ ջորի բառը յիշուած է արդէն նոյն տեղը): Նոր Հայկ. բառ. ունի երկու վկայութիւն, որոնցմէ մէկուն մէջ մուղ գործածուած է իբր ածական՝ «վարժ, կրթուած, ընտելացած (անասուններու համար)» նշանակութեամբ, իսկ երկրորդին մէջ իբր գոյական՝ «գրաստ» նշանակութեամբ. Հմմտ. Լինի երիվար մուղ եւ վարժ. Ոսկ. Ես. Էշն օրինակեաց զհրէայսն. քանզի որպէս մուղ ի թամբս եւ ի բեռն... Չքր. կթ.:

## 24. Յոպոլ Ա Մն. ԺԹ. 13։

*Համպաքաջալերեաց, ժիր լիցուք ի վերայ զօրաց, քաղաքաց, յաւտակյաց երկրին Աստուծոյ մերոյ:*

*Քաջ լեր եւ զօրասցուք վասն ժողովրդեան մերում եւ վասն քաղաքաց Աստուծոյ մերոյ:*

Քա՛ջ լեր եւ զօրասցուք վասն ժողովրդեան մերում, եւ վասն քաղաքաց Աստուծոյ մերոյ։

Յոպոլ բառը գոյութիւն չունի ո՛չ Եբրայականին եւ ո՛չ ալ Եօթանասնից թարգմանութեան մէջ. սակայն քաղաքաց բառին հետ յարադրութիւնը կը ցուցնէ թէ "տեղ" նշանակող բառի մը հետ գործ ունինք։ Իրօք ալ ՆՀԲ (Նոր Հայկ. բառ.) ունի յոպոլ հոյրէնի "մէկուն բուն երկիրը". հմմտ. Հեշտալի է եւ աշխարհս այս եւ հայրենի յոպոլն. Ածաբ. ի Մակաբ. Պատերազմ տան վասն հայրենեաց յոպոլի եւ փրկութեան ազգի. Սրկ. քհ.

## 25. Ոռնաձեռնեայ Բ Մն. Է. 9։

*Եւ արար Սողոմովն զտօն նաւակատեացն ի ժամանակի յայնմիկ զեւթն օր... Եւ արար յաւուրն ութերորդի զոռնաձեռնեայսն, զի զեւթն օր արար զնաւակատիս սեղանոյն եւ զեւթն օր արար զտօն տաղաւարացն:*

*Եւ արար Սողոմոն զտօնն ի ժամանակի յայնմիկ զեւթն օր... Եւ արարին յաւուրն ութերորդի ժողով մեծ, զի զեւթն օր արարին զնաւակատիս սեղանոյն եւ զեւթն օր արարին զտօնն:*

Եւ արար Սողոմոն զտօնն ի ժամանակին յայնմ աւուրս եւթն... Եւ արար յաւուրն ութերորդի ելը. վասն զի զնաւակատիսն արար սեղանոյն՝ զեւթն օր տօնին։

Նորագիւտ օրինակը կը հայթայթէ մեզ շատ կարեւոր բառ մը ոտնջեռեայք, որուն դէմ Եբրայականն ունի “ժողով մեծ”, իսկ Եօթանասնիցը “ելս”. ասիկա նաւակատիք բառին հականն է, որովհետեւ նաւակատիքը տօնին պատրաստական մասն է, իսկ ոտնջեռեայք բուն տօնը կամ տօնին վերջաբանը: Կը թուի կազմուած ըլլալ ոտն եւ ջեռնուլ բառերէն. սակայն ատոնց ներքին կապը անըմբռնելի է ինձ: Թերեւս ասորերէնը կարենայ տալ յարմար մեկնութիւն մը:

26. Ուղերկութիւն Բ Մն. ԺԶ. 13:

“Եւ արարին նմա ուղերկութիւն մեծ եւ լացին զնա լալեօք մեծաւ յոյժ”: Եօթանասնիցն ունի հոս “եւ արարին նմա յուղարկութիւն մեծ յոյժ”, ուր Նորագիւտին ուղերկութիւն ձեւին դէմ կը գտնենք յուղարկութիւն, այն է արդի յուղարկաւորութիւն տասնկանգնեան ձեւը: Երկրորդ ձեռագիրն ունի յուղարկութիւն, զոր խալթեան բնագրին մէջ մտցուցած չէ իրաւամբ: Որովհետեւ ըստ իս ուղերկութիւն ոչ միայն սխալ ձեւ մը չէ, այլ նոյն իսկ աւելի հին եւ ընտիր է քան յուղարկութիւն: Բառս՝ ինչպէս յայտնի է, կազմուած է ուղի եւ արկանել բառերէն. ի + ա հնագոյն Հայերէնի ձայնական օրէնքներով կը դառնայ ե. ինչ. *ձիապաան = ձեպաան, *այգիագործ = այգեգործ, *բարիապաշտ = բարեպաշտ եւն. ըստ այսմ սպասելի էր ուղերկութիւն, զոր կը գտնենք Նորագիւտին առա-

ջին ձեռագրին մէջ եւ ոչ թէ յաւղարկութեան, որ համեմատաբար նոր շրջանի ձեւ է։

## 27. Պատգարհել Բ Մն. ժգ. 20։

| | |
|---|---|
| *Եւ նկուն եղեն որդիքն Իսրայելի յաւուր յայնմիկ... Եւ ոչ կարաց պատգարհել Յերոբովամ, զի զամենայն աւուրս կենաց իւրոց Աբիա զկնի էր եւ հալածէր զնա:* | *Եւ նկուն եղեն որդիքն Իսրայելի յաւուր յայնմիկ... Եւ ոչ կարաց գտանել զօրութիւն Յերոբովամ զամենայն աւուրս Աբիայ:* |

Եւ նկուն եղեն որդիքն Իսրայելի յաւուր յայնմիկ... եւ ոչ եւս գոյր զօրութիւն Յերոբովամայ զամենայն աւուրս Աբիայ։

Պատգարհել կը նշանակէ ուրեմն «ոյժ գտնել, զօրանալ, զօրութիւն ունենալ»։ Կը թուի իրանեան փոխառութիւն, բայց ոչ զանդկերէնի եւ ոչ ալ պարսկերէնի մէջ կրցայ գտնել նման բառ մը։

## 28. Ստանձնակիր Բ Մն. Բ. 18։

| | |
|---|---|
| *Եւ գտան ի մէջ հարիւր յիսուն եւ երեք հազարք եւ վեց հարիւր այր. եւ արար ի նոցանէ Սողոմոնի եւթանասուն հազար ստանձնակիր եւ ութսուն հազար քարակոփ ի լերինն, եւ երիս հազարս եւ վեց հարիւր գործավարս ի վերայ նոցա:* | *Եւ գտան հարիւր յիսուն եւ երեք հազարք եւ վեց հարիւր. եւ արար ի նոցանէ եւթանասուն հազար բեռնակիր եւ ութսուն հազար քարահատ ի լերինն, եւ երիս հազարս եւ վեց հարիւր գործավարս ի վերայ նոցա:* |

Եւ գտան հարիւր յիսուն հազար, եւ երեք հազար եւ վեց հարիւր. եւ արար ի նոցանէ եւթանասուն հազար բեռնակրաց, ութսուն հազար քա-

րահատաց եւ զերեք հազարսն եւ զվեց հարիւրսն՝ գործավարս ի վերայ նոցա։

Նորագիւտ սփանջնակիր բառին տեղ Եբրայականն ու Եօթանասնիցն ունին բեռնակիր։ Մեր բառը կազմուած է ուրեմն ըստ անջն կրել ձեւէն։ Ասոր հետ նոյն է նաեւ յաջորդը։

## 29. Սփանջնաւոր Բ Մն. ԼԴ. 13։

*Եւ արքն՝ որ էին հաւատարիմք ի վերայ գործոցն, Յայեթ եւ Աբդիա Ղեւտացիք յորդւոցն Մերարեա, եւ Զաքարիա եւ Մեսաղամ յորդւոցն Կաաթու ծեպօղք, եւ ամենայն որդիք Ղեւտացւոցն ի սրինգս երգոց: Ի վերայ բեռնակիր ստամձձառորաց վարդապետք, որ գործեցին զգործ ծեպելով:*

*Եւ արքն այնոքիկ կային հաւատովք ի վերայ գործոյն եւ վերակացուքն նոցա Յայեթ եւ Աբդիա Ղեւտացիք յորդւոցն Մերարեայ. եւ Զաքարիա եւ Մեսուղամ յորդւոցն Կաաթու եւ ամենայն Ղեւտացիքն էին ճարտար ի նուագարանս երգոց: Եւ ի վերայ բեռնակրացն եւ ի վերայ ամենայն գործաւորացն վերակացուք:*

Եւ արքն այնոքիկ կային հաւատովք ի վերայ գործոյն. եւ վերակացուքն նոցա՝ Յէթ եւ Աբդիաս՝ Ղեւտացիք յորդւոցն Մերարեայ, եւ Զաքարիաս եւ Մեսողամ յորդւոցն Կահաթու այց առնել. եւ ամենայն Ղեւտացի որ ոք էր իմաստուն նուագարանօք երգոցն։ Եւ ի վերայ բեռնակրացն եւ ի վերայ այնոցիկ որք առնէին զգործն եւ զպատրաստութիւն գործոյն...։

Սփանջնաւոր բառին դէմ հոս ալ թէ Եբրայականն ու թէ Եօթանասնիցը կը դնեն բեռնակիր. եւ եթէ Նորագիւտին մէջ բեռնակիր բառն ալ կայ, ասիկա շփոթելու չէ մեզի, որովհետեւ իբրեւ բնական վերադիր գրուած է, իբր թէ ըսել ուզէր բեռ կրող մշակ։

Վերի վկայութեան մէջ երկու նկատելի կէտեր ալ կան. առաջին՝ վորդոպետ բառը "վերակացու" նշանակութեամբ. ասիկա բաւիս հնագոյն առումն է, ինչպէս ունի եւ Խորենացին (Ա. 15) եւ ուրկէ ծագած է արդի վորպետ ձեւը (վարդապետ > *վարդպետ > վարպետ): Ըստ այսմ Բէհնաչէր սորանճնաօրոզ վորդոպետ կրնայ պատշաճապէս թարգմանուիլ "համալպաշի":

Երկրորդն է ճեղօղէ, եւ աւելի վարը ճեղէլով. ասոնք ըստ երեւոյթին կը պակսին Եբրայականին եւ Յօթանասնից մէջ, բայց իրօք վէրակայա, այս առնէլ ձեւերուն տեղ դրուած են եւ կը նշանակեն "փութացնող, շտապեցնող, հսկող որպէս զի գործաւորները ծուլութիւն չընեն": Հոս նկատենք նաեւ թէ շէնքի մը վրայ աշխատելու ժամանակ երգելու սովորութիւնը մինչեւ այսօր ալ կենդանի է Պարսկաստանի մէջ. բանուորներէն մէկը՝ կարծեմ գլխաւորը, ամբողջ օրը պատերուն վրայ կանգնած բարձր ձայնով կ'երգէ. "ֆուլլըխը վէր ղուլամ. խէրփիճ վէր ղուլամ — շաղախը տո՛ւր, տղաս, աղիւսը տո՛ւր, տղաս" եւն անվերջ. իսկ միւսները զայն լսելով կ'աշխատին լուիկ մնջիկ:

## 30. Սոփրէ Բ Մն. ի. 6:

*Տէր Աստուած հարցն մերոց, դու այն ես, որ յերկինս եւ ի վերայ երկրի ստորև, եւ իշխես դու ի վերայ ամենայն թագաւորութեանց հեթանոսաց:*

*Տէր Աստուած հարցն մերոց, ո՞չ ապաքէն դու ես Աստուած յերկինս, եւ դու տիրես ամենայն թագաւորութեանց հեթանոսաց:*

Եբրայականը տառ առ տառ նոյն լինելով Եօթանասնից հետ, վերջինս առաջնոյն տեղ դրի։ Ուրեմն երկուքին մէջ ալ կը պակսի Ե– է փերայ Երէրէ սորէ հատուածը։ Սորէ ձեւին դէմ երկրորդ ձեռագիրն ունի է սորոշորէ. բայց ոչ մին եւ ոչ միւսը կը յարմարի այստեղ. ուստի կը թուի թէ խանգարեալ բառ մ'է եւ թերեւս հարկ է ուղղել այսպէս. "Դու այն ես, որ յերկինս եւ ի վերայ երկրի» սէրէ...։"

31. Վարմ Բ. Մն. Դ. 12, 13։

*Եւ կատարէր Խիրամ զամենայն գործ, զոր արար Սողոմովն արքայ ի տան Աստուծոյ. զսիւնսն զերկոսին խարսխօք խոյակօք հանդերձ, եւ զքոթարովթն ի վերայ խոյակաց սեանցն երկուս, եւ վարմս երկուս վանդակաձեւս ծածկել զերկոսին խոյակսն քոթարոթայն, որ էին ի վերայ խոյակաց սեանցն երկոցուն. եւ նռնաձեւս ոսկիս եւ ի միջի երկոցուն վանդակաց վարմաց նորա երեք հարիւր, երկուս կարգս ի միում վանդակապատ վարմի:*

Եւ կատարեաց Քիրամ առնել զամենայն գործն զոր հրամայեաց արքայն Սողոմոն ի տանն Աստուծոյ։ Զսիւնսն երկուս եւ ի վերայ նոցա զխոյակսն եւ ի վերայ խոյակաց սեանցն զքովթարովթսն զերկոսեան, եւ զվանդակագործն զերկուս՝ առ ի ծածկել զխոյակս քովթարովթայցն, որք

էին ի վերայ գլխոց սեանցն: Եւ զանգակս ոսկեղէնս չորեքհարիւր յերկոսեան վանդակապատն. եւ զերկուս ազգս նռնաձեւացն ի միում վանդակագործէն....:

Մեզ զբաղեցնող բառերուն վրայ Եբրայականը տարբերութիւն չունի, ուստի հարկ չկայ դնել զայն առանձին: Վորմ յայտնի էր մեզ իբրեւ "ձուկ բռնելու ուռկան". բայց հոս ստացած է երկրորդ նշանակութիւն մ'ալ, այն է "ցանցակերպ զարդ, հիւսուածքի պէս. ֆրանս. réseau, ռուս. сѣтка":

Վանդակող ձեւը կարելի էր կարծել վանդ(ակ) եւ կող բառերով բարդուած, բայց որովհետեւ քիչ մը յետոյ կ'ըսուի վանդակապատ, Եօթանասնից մէջ վանդակապատ ձեւով է եւ երկու ձեռագիրներէն մէկն ալ վանդակապատ ընթերցուածն ունի, ուստի անշուշտ ուղղելի է վանդակապատ:

## 32. Վէրոտորէ Ա Մն. ԺԱ. 23, ի. 5:

*1. Սա այն է, որ սատակեաց զայրն եգիպտացի, զայրն յաղթանդամ հինգկանգնեան, որ ունէր զնիզակն ի ձեռին իբրեւ զմնարատորի ոստայնանկաց (Ա Մն. ԺԱ. 23):*

Նա եհար զայրն եգիպտացի՝ զայր երեւելի հինգկանգնեան, եւ ի ձեռն եգիպտացւոյն նիզակ իբրեւ ղոտորէ ոստայնանկաց:

*2. Եւ եղեւ դարձեալ պատերազմ ընդ այլազգիսն. եւ հարկանէր վանէր Եղիա-*

*Նան որդի Յայիր զԱթոմի եւ զեղբայր Գողիադու, եւ բուն նիզակի նորա իբրեւ զմեղուատորի ոստայնանկաց (Ա Մն. ի. 5):*

**Եւ եղեւ դարձեալ պատերազմ ընդ այլազգիսն, եւ եհար Եղէանան որդի Յայիրայ զՂէեմի զեղբայրն Գողիադու գեթացւոյ. եւ փայտ նիզակի նորա իբրեւ ղստորէ ոստայնանկաց:**

Եբրայականը տարբերութիւն չունի:

Խնդրական բառին դէմ միւս ձեռագիրը կը ներկայացնէ առաջին վկայութեան մէջ վերստորէն, երկրորդ վկայութեան մէջ ղվեր» ստորէ ընթերցուածը: Եբրայականն ունի כפנור ארגים, այն է "գլան ոստայնանկաց": Եօթանասնիցը կը ներկայացնէ պարզապէս ստորէ, որ գործածուած է նաեւ Բ Թագ. ԻԱ, 19 եւ կը մեկնուի "ջուլհակին առջեւի փայտը՝ որուն վրայ կը փաթթուի գործած կտաւը": Ասկէ կը հետեւի թէ վերստորէ ածանցուած է ստորէ ձեւէն. եւ եթէ վեր մասը ի վեր, վեր բառն է, ամենայն հաւանականութեամբ ստորէ ձեւն ալ ստորէ-, ստորոտ բառն է, որով վերստորէ կը դառնայ "վեր վար, բարձր ու ցած" կամ նման նշանակութեամբ կազմութիւն մը:

## 33. Վոէստաչ Բ Մն. Բ. 10:

*Եւ ահաւասիկ գործաւորացդ փայտահարիդ ծառայից քոց հրաման տուաք տալ վխեստուսկ ցորենոյ քորս քսան հազար, եւ զարոյ քորս քսան հազար, եւ ծիթոյ մարս եւ գինոյ մարս քսան հազար:*

*Եւ ահաւասիկ գործաւորացդ փայտահարիդ ծառայից քոց տաց ես ցորենոյ քորս քսան հազար եւ զարւոյ քորս քսան հազար, եւ գինոյ մարս քսան հազար եւ ծիթոյ մարս քսան հազար:*

Եւ գործօնէիցն որք հատանեն զփայտն՝ ի կերակուր ետու հաց՝ ռոճիկ ծառայից քոց՝ քսան հազար քոռ ցորենոյ, եւ քսան հազար քոռ գարւոյ, եւ քսան հազար չափ գինւոյ, եւ ձէթ քսան հազար չափ։

Նորագիւտ գեղեցիկ բառս Ճխեսոփուկ կը նշանակէ ուրեմն «ռոճիկ, թոշակ, բանւորներու տրուած վարձ պաշարեղէնով»։

## 34. Տոհմ։

Նորագիւտ Մնացորդաց գրքին մէջ տոհմ բառը շատ անգամ անսովոր ձեւով մը հոլովուած է. հմմտ. է տոհմանէ Ա Մն. Ի. 6. տոհմանցն Ա Մն. ԻԶ. 26. ազգատոհմանցն Բ Մն. Ա. 2. Ասոնք կ'ենթադրեն տոհմն ուղղական մը, որուն այլուր պատահած չեմ։

## 35. Տոփեայ Բ Մն. Բ. 16։

*Ու մեք հարցուք զփայտ ի Լիբանանլեռնէ ըստ ամենայն պիտոյից քոց եւ բերցուք զնա ի տոփայս ընդ ծով ի կողմանս Յովպացւոց եւ դու հանցես զնա յԵրուսաղէմ:*

*Ու մեք հատցուք փայտս ի Լիբանանէ ըստ պիտոյից քոց եւ բերցուք զնոսա ի լաստս ընդ ծով ի Յոպպէ առ քեզ եւ դու հանցես զնոսա յԵրուսաղէմ:*

Եւ մեք հատանեմք փայտ ի Լիբանանէ ըստ ամենայն պիտոյից քոց. եւ ածցուք զնոսա ընդ ծով լաստս ի Յոպպէ եւ հաւաքեսցես զայն յԵրուսաղէմ։

Երեքին միաձայն վկայութեամբ տոփեայ կը նշանակէ ուրեմն «լաստ»։ Կայ թրք. دوبه duba «լաստ, լաստանաւ», բայց ասիկա առ առաւելն կրնայ մեզմէ փոխառեալ ըլլալ։ Կը թուի թէ

փոքոյ ստուգաբանօրէն կապ ունի բուն «արկղ» բառին հետ։

«Զնա ի տոփայս» ընթերցուածին դէմ երկրորդ ձեռագիրն ունի «ինա փոքոյ» սխալագրութիւնը, ուր «–» յառաջացած է անշուշտ երկաթագիր գրութեան մէջ Ի եւ Ի տառերը շփոթելէն։

## 36. Քակքով Ա Մն. ԻԸ. 20։

Մինչեւ գործեսցես կազմեսցես գործ պաշտաման տանն Տեառն, զօրինակ տաճարին եւ տան նորա եւ քակքով նորա եւ վերնատանց նորա եւ ներքին գանձանակին եւ տանն քաւութեան եւ զօրինակ տանն Տեառն:

Մինչեւ կատարեսցես զամենայն գործս պաշտաման տանն Տեառն [մնացածը կը պակսի]:

Մինչեւ կատարեսցես զամենայն գործ պաշտաման տանն Տեառն։ Եւ ահա այդ է օրինակ տաճարին եւ սենեկաց նորա եւ սրահից նորա եւ վերնատանցն եւ շտեմարանացն, ներքնատանցն եւ տանն քաւութեան եւ օրինակ տաճարին Տեառն այդ է։

Ինչպէս որ Բազմավէպ 1900, էջ 122 նկատած է, եբրայական եւ ասորական օրինակները չունին վերի հատուածը, ուստի պիտի դիմենք Եօթանասնից թարգմանութեան, ուր քակքով մեկնուած է «սրահ»։ Բազմավէպ (անդ) արդէն այս բառը կը մեկնէ իբր փոխառեալ Եօթանասնից Ζαχχῶ (կամ Χαχχῶ) ձեւէն։

## 37. Ի քառան Բ Մն. Ա. 14։

*Եւ արար իւր Սողոմոն կառս եւ երիվարս. եւ եղեն կառք նորա հազար եւ երեք հարիւր. եւ հեծեալք իւրեւ երկոտասան հազար, եւ եթող անդ զկառսն ի քառան ի քաղաքս կառապանացն:*

*Եւ ժողովեաց Սողոմոն կառս եւ հեծեալս. եւ եղեն կառքն նորա հազար եւ չորեք հարիւր եւ հեծեալք երկոտասան հազար. եւ եթող զնոսա ի քաղաքս կառաց*

**Եւ ժողովեաց Սողոմոն կառս եւ հեծեալս, եւ եղեն նորա հազար եւ չորեք հարիւր կառք, եւ երկոտասան հազար հեծելոց. եւ եթող զնոսա ի քաղաքս հեծելոցն։**

**Ի քառան ձեւը կը պակսի թէ եբրայականին եւ թէ եօթանասնից մէջ։ Եւ որովհետեւ ձեռագիրներէն մէկն ալ չունի, մանաւանդ որ տեղւոյն յարմար մեկնութիւն մը չկրնար ստանալ, ուստի աւելորդ սխալագրութիւն մը ըլլալու է՝ ազդուած յաջորդ “ի քաղաքս„ եւ նախորդ “զկառսն„ ձեւերէն։**

## 38. Քարապոակ Բ Մն. Իե. 12։

*Զերքակալ առնէին որդիքն Յուդայ եւ առեալ ածէին զնոսա ի կատար քարապականին եւ անդ քարավէժ առնէին զնոսա եւ սատակէին:*

*Զերքակալ արարին որդիքն Յուդայ եւ ածին ի կատար քառաժայռին եւ քարավէժ արարին զնոսա եւ սատակեցան ամենեքեան:*

**Գերեցին որդիքն Յուդայ եւ ածին զնոսա ի գլուխ քարանձաւին եւ գահավէժ առնէին զնոսա ի ծայրից Քարջաւանդակին եւ ամենեքեան սատակէին։**

**Քարապոակ բառին իմաստն է ուրեմն “քարաժայռ„ կամ “բարձրաւանդակ„. բայց նախ-**

*լով ստուգաբանական կազմութեան ուղիղ է միայն վերջինը, իբր քար եւ պաղ բառերէն բաղդուած, «քարին ծայրը, բարձր տեղ, քերծ»:*

## 39. Քեփուր. Ա Մն. ԻԸ. 17.

*Նոյնպէս եւ շամփրոցն եւ մսահանացն, տաշտիցն ոսկեացն եւ ճաշակացն եւ մաղզմայիցն ոսկոցն զկշիռ քեփուրացն եւ զքեփուրն, եւ զկշիռ ոսկոյն եւ զարծաթոյ իւրաքանչիւր կշռով:*

*Նոյնպէս եւ մսահանացն եւ նուիրանոցացն եւ տաշտիցն ոսկեղինաց եւ բաժակացն ոսկեղինաց՝ զկշիռ իւրաքանչիւր բաժակի, եւ բաժակացն արծաթեղինաց՝ զկշիռ իւրաքանչիւր բաժակի:*

*Նոյնպէս եւ զարծաթեղինացն եւ զմսահանացն եւ զնուիրանոցացն եւ զտաշտիցն ոսկեղինաց եւ զկշիռս ոսկւոյ եւ արծաթոյ եւ զափոցն զիւրաքանչիւր ուրուք:*

*Այս երեք, իրարմէ բաւական տարբերող հատուածներուն համեմատութենէն կ'երեւայ որ քեփուր կը նշանակէ «բաժակ». ասիկա բուն եբրայեցի բառ մ'է, որ եբրայական բնագրին նոյն հատուածին մէջ վեց անգամ կրկնուած է.*

*Համմտ. եբր.* המולגות והמזרקות והקשות זהב טהור
ולכפורי הזהב במשקל לכפור וכפור
ולכפורי הכסף במשקל לכפור וכפור

*Յունականին մէջ ալ* Κεφουρὲ *ձեւն ունի բառս, ինչպէս կը նկատէ եւ Բազմավէպ* 1900, *էջ* 122:

Ձեռագիրներէն մին ունի "քեթուրայն եւ զքեփուր" ընթերցուածը. այս անշուշտ սխալ է, բայց անշուշտ բնագրին մէջ ալ կարելի չէ մէյ մը քեփուր եւ մէյ մ'ալ քեփուր գրութիւնը ընդունիլ. վերջինը իբրեւ հակառակ հայ լեզուի ուղղագրութեան՝ պէտք է ուղղել զքեփուրն։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ*

—

Գրքոյկիս տպագրութենէն յետոյ ձեռքս անցաւ Գուրեան Եղիշէ եպիսկոպոսի մէկ յօդուածը՝ Հրատարակուած Մասիս Թերթին մէջ (1900, էջ 515—519), "Մնացորդաց գրքերու Նորագիւտ Թարգմանութիւնը" վերնագրով։

Յօդուածս բաւական ընդարձակօրէն կը խօսի Մնացորդաց գրքին վրայ եւ կը քննէ զայն այլեւայլ տեսակէտներով։ Գերապատիւ Հեղինակը կը կասկածի Նորագիւտին լեզուն ոսկեդարեան ընդունելու. այս մասին համամիտ չենք իրեն։ Ի մէջ այլոց կայ նոր բառերու հաւաքում մը եւ անոնց մեկնութիւնը, զոր անտես ընելու չեն անոնք որ այս նիւթով զբաղիլ կ'ուզեն։ Թէ այս հաւաքումը եւ թէ տրուած մեկնութիւնները մեր գրքոյկէն դուրս բան մը գրեթէ չեն պարունակեր։ Յիշել պէտք է միայն ւէ՛ ձեւին յաջող բացատրութիւնը. Գուրեան կը մեկնէ զայն "լրացեալ" իմաստով՝ իբրեւ բառացի թարգմանութիւն յունականին։

---

* Հեղինակին անծանօթ մնացած է հայերէնագէտ Ն. Մառի հատուածն „Новооткрытый армянскій текстъ „Паралипоменонъ" (Къ вопросу о переводахъ на армянскій языкъ), ի Թերթին Кавказскій Вѣстникъ, Кн. XXV (1902), Nr. 4. стр. 66—83, ուր ի նկատի առնուած է միայն թարգմանութեան գրական արժէքը:

ԽՄԲ. «ՀԱՆԴ.»

---

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր, Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1890: Էջ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Տաճ Դ., Արեւելեան Հայք ի Մուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Տըմշէ Ա. եւ Գ. Փիւռն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ե. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գընկատիպ.) 1893: Էջ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տխտկ՝. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ե. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ե. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Ե. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296· Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Ե. Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Ֆր. 2.5

ԺԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Ե. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ

Յակոբայ առ Կողբատոս եւ Կանոնք Թադէի: 1896: Էջ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աքգարու գրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897. Էջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնաթեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնաթեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը+273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մենեվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօդուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Ֆր. —.50

ԼԱ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Ֆր. 5.—

ԼԲ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ մերձակայ գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Ֆր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Է+554: Ֆր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Ֆր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Ֆր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Ֆր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Ֆր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Ֆր. 1.50

ԼԹ. Վէբէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ե+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ

որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Ֆր. 4.50

ԽԱ. Խալաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Ֆր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Ֆր. 3.—

ԽԳ. Մարկուարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Ֆր. -.75

ԽԴ. Գելցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Ֆր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 քարտէզով): 1904: Էջ Ը+117: Ֆր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Ֆր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Ֆր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ Նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105 Ֆր. 1.5

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս: Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Ֆր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Ֆր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Ֆր. 1.50

ԾԲ. Պետերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257:
Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443:
Փր. 7.—

ԾԴ. Պետերսըն Հ., Հին Հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Ե. Տաշեան: 1907: Էջ Է+90:
Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին Հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԴ+433:
Փր. 7.—

ԾԶ. Աճառեան Հրաչեայ, Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38:
Փր. —.60

---

